1916

№ 12.—*Մարտի* 13

ԱՌԱՋԻՆ ՏԱՐԻ

# ՀԱՄԲԱՒԱԲԵՐ

ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ-ԳՐԱԿԱՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ԿՈՎԿԱՍԻ ՀԱՅՈՑ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

10 ԿՈՊԷԿ

ԼՈՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ ԿԻՐԱԿԻ ՕՐԵՐԸ

10 ԿՈՊԷԿ



ՊՕՂՈՍ ՆՈՒՊԱՐ ՓԱՇԱՅ
ՆԵՐԿԱՅԱՑՈՒՑԻՉ ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈՑ ՎԵՀԱՓԱՌ ԿԱԹՈՒՂԻԿՈՍԻ ԵՒ
ՆԱԽԱԳԱՀ ՀԱՅՈՑ ՊԱՏԳԱՄԱՒՈՐՈՒԹԵԱՆ ՊԵՏՈՒԹԻՒՆՆԵՐԻ ԱՌԱՋ.

**ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆՆԵՐ՝** *տողին* **10** *կոպ.*
*Խմբագրութիւնը բաց է առաւօտեան ժամի 10—2 բացի կիրակի և տօն օրերից։*
*Տպագրելու ուղարկուած ձեռագրերը կարող են ենթարկուել փոփոխման և կրճատման։*
*Տպագրութեան համար անյարմար ճանաչուած մեծ յօդուածները պահւում են վեց ամիս խմբագրատանը, իսկ փոքրերը՝ անմիջապէս ոչնչացւում։*
*Տպագրութեան համար անյարմար թղթակցութեանց և յօդուածների առթիւ խմբագրութիւնս պարտաւոր չէ համարում գրաւոր բացատրութիւններ տալ։*

**ԲԱԺԱՆՈՐԴԱԳԻՆԸ** **տարեկան 4** *ռուբլի,* **կէս տարուան 2** *ր.* **50** *կ.*
*Բարեգործական Ընկերութեան անդամների, հայ զինուորների, ուսուցիչների և հասարակական հիմնարկութեանց համար՝* **տարեկան 3** *ր.,* **կէս տարուան 2** *ր.։ Արտասահման՝* **տարեկան 5** *ր.,* **կէս տարուան 3** *ր.*

**ԽՄԲԱԳՐՈՒԹԻՒՆԸ՝** *Թիֆլիս, Արտաարադեան հրապար.* № 7.
**Հեռախօս № 29.**

*Պաշտ հասցէն.*—Тифлисъ, „Амбаваберъ". Tiflise, Rédaction du journal „Hambavaber".

ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ

ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ՊԱՏԵՐԱԶՄԸ.—ՆԵՐՔԻՆ ՏԵՍՈՒԹԻՒՆ. Նուէրներ «Համբաւաբերի» տարածման համար. — Պետական կեանք.— Հայոց պատգամաւոր Պապաջանեանի ճառը Պետական Դումայում.—Հանդէս հայոց բանաստեղծութեան, Բրիւսովի դասախօսութիւնը Սկայի.—Մեր հնագոյն և նորագոյն ուսանողութիւնը Շովրեանի.—Էրզրումի անցեալից Լէօի. —ԳԱՒԱՌ. Արդահան, Բաթում, Ցարսկիէ Կոլոդցի, Կորուսած տղայ.—ՏԱՐԵԳԻՐ ԲԱՐԵԳՈՐԾՈՒԹԵԱՆ.—ՔՐՈՆԻԿՈՆ.—ԱՐՏԱՔԻՆ ՏԵՍՈՒԹԻՒՆ.—Անխիտանականները և համաշխարհային պատերազմը Ս. Ջամալեանի.—Տաճկահայեր. Բուլանըխի կոտորածը Ս. Մովսիսեանի.—Պարսկաստանի փախստական հայերի և ասորիների ծանր կացութիւնը Ա. Շարաֆեանի.—ԳԵՂԱՐՈՒԵՍՏ. բանաստեղծ. Յ. Պետրոսեանի.—ԳԻՏԱԿԱՆ. Հետաքրքրական զեկուցումներ.—ՄԱՄՈՒԼ.—ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆՆԵՐ։

# Համաշխարհային պատերազմը

## ՏԱՃԿԱԿԱՆ ՌԱԶՄԱԲԵՄԸ

Կովկասեան ճակատի վրայ այս շաբաթ Կարին-Երզնկայ գիծն էր հանդիսանում կարևոր գործողութիւնների թատերաբեմ։ Այդ գծի վրայ ռուսները առաջ շարժուելով՝ գրաւել են նախ Մամախաթուն աւանը, որ Երզնկայից 60 վերստ հեռու է գտնւում, և ապա Կոտուր գիւղը, որ գտնւում է Մամախաթունից 15 վերստ հարաւ-արևմուտք։ Թիւրքերը, ինչպես և պէտք էր սպասել, Երզնկայի այս առաջապահ դիրքերի վրայ ցանկացել են դիմադրութիւն ցոյց տալ ռուսներին, բայց այդ չի յաջողուել։ Մամախաթունի և շրջանի կռիւներում ռուսների ձեռքն են ընկել 44 սպայ, մօտ 800 ասկեար, մի քանի գնդացիր, 5 թնդանօթ, մի դրօշակ և այլ պատերազմական աւար։ Թշնամու կորուստները վկայում են, որ նա դեռ չի սթափուել Կարինի շրջանում կրած հարուածներից։ Ռուսները, պէտք է յուսալ, հաշուի կառնեն այս հանգամանքը և այնպիսի արագութեամբ կհետապնդեն թիւրքերին, որ նրանք իրենց շունչը մէկ էլ Եփրատի այն ափին առնեն։

Այս ճակատի միացած գծերից ծովամերձ շրջանում է փոքր ինչ կենդանութիւն նկատւում։ Ռուսները այդտեղ էլ անընդհատ առաջ են շարժւում, թէև ոչ նախկին արագութեամբ։ Այս հանգամանքը պէտք է բացատրել մասամբ ճանապարհների դժուարութեամբ, մասամբ էլ թիւրքերի դիմադրութեամբ։ Ըստ մասնաւոր տեղեկութիւնների՝ թիւրքերը չեն ցանկանում հեշտութեամբ զիջել ռուսներին Տրապիզոնը։ Նրանք նոր գնդեր են հասցրել իրենց այդ ամենակարևոր նաւահանգիստը պաշտպանելու համար։ Հաւանական է, որ այս օգնական զօրքերը Ռիզէից Տրապիզոն տանող լեռնանցքերում դիմադրութիւն են կազմակերպել, այնպէս որ ռուսները կռւով միայն կարող են առաջ խաղալ։ Այդ կռիւներից մէկում ռուսների ձեռքն են ընկել մօտ 150 գերի և մի քանի գնդացիր։

Պարսկական ճակատի վրայ ռուսները նոր յաջողութիւն են ունեցել։ Նրանք կռւով գրաւել են Սպահանը, ուր երկար ժամանակ թիւրք-գերմանական գործակալները և նրանց վարձկանները իշխում էին։ Տեղական ընդհ. նահանգապետը և միացած աստիճանաւորները նրանց ոտնձգութիւնների երեսից փախել և ապաւինել էին ռուսներին։ Այժմ նրանք վերահաստատուած են իրենց իշխանութեան մէջ։

Մէջագետքի ճակատում անգլիացիք այս շաբաթ մի թեթև ընդհարում են միայն ունեցել թիւրքերի հետ։ Նրանց մի զօրասիւնը յարձակւում է թշնամու դիրքերի վրայ Տիգրիսի ափին և նրանցից շատերին կոտորելով և մի 50-ի չափ ասկեար գերելով յետոյ վերադառնում։ Այս կռիւը չնչին է իր չափով և ռազմական հետևանքով, բայց նշանակալից է այն տեսակէտից, որ անգլիացիներն են սկսողը։ Այդ ցոյց է տալիս, որ չնայած Վոլֆի գործակալութեան հաւաստիացումներին՝ անգլիացիները բաւական ապահով են զգում իրենց Տիգրիսի ափերին։

## ԲԱԼԿԱՆԵԱՆ ՌԱԶՄԱԲԵՄԸ

Յունաստանն իր հիւսիսային և հիւսիս-արևմտեան սահմանագլխին բուլղարների և գերմանացիների հետ մի չէզոք հողաշերտ էր որոշել, որպէսզի երկու կողմերի զօրքերն իրար չպատահեն և ընդհարումներ կամ թիւրիմացութիւններ չառաջացնեն։ Այժմ ինչպէս մեր հեռագրական գործակալութիւնն է հաղորդում՝ գերմանա-բուլղարական զօրքերը մտել են այդ հողաշերտը և գրաւել մի քանի յունական գիւղ։ Յունաց կառավարութիւնը, ինչպէս երևում է, այս իրաւախախտումն էլ ուզում էր կլլել։ Սակայն ֆրանսացիք դուրս են եկել թշնամու դէմ և նրան դուրս վռնդել գրաւուած գիւղերից։ Վերջին ժամանակներս հետախուզող խմբերի ընդհարումներն այս ռազմաբեմում տեղ-տեղ են միայն պատահում։ Անհաւանական չէ, որ Վերդէնի կռիւների առթիւ բոլոր ռազմաճակատների վրայ սկսուած կենդանութիւնը մօտակայ օրերում իր արձագանքը գտնի նաև Բալքաններում։

## ԱՒՍՏՐԱ-ԳԵՐՄԱՆԱԿԱՆ ՌԱԶՄԱԲԵՄԸ

Արևմտեան ճակատ։ Վերդէնի կռիւները վերջապէս համապատասխան արձագանք գտան ռուսական ճակատի վրայ։ Վերջին հեռագիրները հաղորդում են, որ ռուսները յարձակման են դիմել ամբողջ ռազմաճակատի վրայ։ Տարուայ այս անյարմար ժամանակին, երբ հալոցքն սկսուել է և մեր ռազմաճակատի հիւսիսային և միջին մասը վեր է ածուել ընդարձակ լճերի՝ ռուսների կռիւ սկսելը կարող է բացատրուել երկու հանգամանքով. նրանք կամ ցանկանում են արգելք հանդիսանալ, որ թշնամին Վերդէնի տակ ունեցած իր կորուստները լրացնի արևելեան ճակատի զօրքերով և կամ տեղեակ լինելով, որ թշնամին արդէն բաւականաչափ զօրք է տարել այս ճակատից՝

ցանկանում են օգտագործել նրա ժամանակաւոր թուլութիւնը։ Թէ որն է ճիշտ այս ենթադրութիւններից—միևնոյն է. ուրախալին այն է, որ վերջապէս հաստատւում է դաշնակիցների մէջ ռազմական գործողութիւնների այն բաղկապը (կոնտակտը), որի բացակայութիւնը մինչև այժմ թշնամու յաջողութիւնների գլխաւոր պատճառներից մէկն է եղել…

Ինչպէս ասացինք՝ կռիւներն սկսուած են ամբողջ ճակատի երկարութեամբ, բայց նրանք առանձնապէս ուժեղ են ռուսների աջ թևի վրայ Ռիգայի և Եակոբշտատի շրջանում և կենտրոնի հիւսիսային մասում կամ Դուինսկից հարաւ։ Առաջին գծի վրայ ռուսները գրաւել են մի երկու գիւղ և անտառամասեր Աւգուստինհոֆ և Բուշհոֆ գիւղերի մօտ։ Այստեղ թշնամին այնքան ամրացած է, որ մեր փոքրիկ առաջխաղութիւնն էլ պէտք է խոշոր յաջողութիւն համարել։ Գալով Դուինսկի գծին՝ այստեղ կռիւները կատաղի յանձակումների բնոյթ են ստացել։ Երկու կողմն էլ առատօրէն գործ են ածում իրար դէմ հեղձուցիչ և թունաւոր գազեր։ Ռուսական ողայակոյտը (շտաբը) բացայայտ կերպով յայտնում է, որ գերմանացիների հետ այդպիսի ձևերով կռուելն խոսելի չէ համարւում։ Այս կռիւների ընթացքում մի քանի տեղ ռուսները դուրս են մղել գերմանացիներին խրամատներից։ Նարոչի շրջանում նրանք մի կռուի ընթացքում ոչնչացրել են երկաթալարերի երեք շարք և գրաւել երեք կարգ խրամատներ։ Ըստ նախնական հաշուի, այս կռիւներում ռուսների ձեռքն են ընկել 17 գերմանական սպայ, մօտ 1000 զինուոր, 12 գնդացիր և կռուի այլ պարագաներ։ Գալիցիայում ևս գործողութիւնները կենդանացել են։ Ուսեզկոյի շրջանում ռուսների ձեռքն են ընկել մօտ 100 գերի, 2 թնդանօթ և բազմաթիւ ռազմանիւթ։

Արևմտեան ճակատում այս շաբաթ էլ կռիւները շարունակւեցին Վերդէնի շուրջը։ Անշուշտ որևէ յաջողութիւն ձեռք բերելու և ժողովրդի ու զօրքի ընկած տրամադրութիւնը բարձրացնելու պահանջից դրդուած՝ գերմանական գահաժառանգն այս շաբաթ Մասի աջ և ձախ ափերին մի քանի կատաղի յարձակումներ ևս կատարեց Վերդէնի ամրութիւնների դէմ, բայց այս փորձերն էլ նախորդների վախճանն ունեցան։ Ֆրանսացիք, ինչպէս ճակատամարտի սկզբին նոյնպէս և հիմա, կատաղի դիմադրութեամբ ի դերև էին հանում գերմանացիների բոլոր ճիգերը։ Վերջին օրերս գերմանացիք մի ահռելի փորձ ևս արին, մեծ շրջագծով անցնելու Վերդէնի ամրութեան յետևը։ Սակայն այս փորձի պատճառով հսկայական զոհերը առայժմ այն արդիւնքն են միայն տուել, որ նրանք գրաւել են Աւոկուր անտառի մի մասը՝ առանց կարողանալու վանդել ֆրանսական ճակատը։ Սակայն Վերդէնի վտանգը մենք դեռ անցած չենք համարում։

Իտալական ճակատում ևս գործողութիւնները սկսել են կենդանանալ։ Մօտ երկու շաբաթ առաջ լուր տարածուեց, թէ Գերմանիան Աւստրօ-Հունգարիայից մօտ 150,000 զօրք է պահանջել ֆրանսական ճակատի գործողութիւնների համար։ Երևի այս ծրագրի իրագործումը կանխելու համար՝ իտալացիք երկար ամիսների հանգստից յետոյ այս շաբաթ յարձակողական քայլերի դիմեցին բոլոր ռազմագծերի վրայ։ Նրանք այժմ մի քանի յաջողութիւններ են ունեցել Կարսոյի և միջին Իզոնցոյի գծերի վրայ և մի թեթև անյաջողութիւն Սագանօ գետի հովտում, ուր նրանք թշնամու ռումբերի տարափից ստիպուած են եղել 500 մետր յետ նահանջելու։

***

# Ներքին տեսութիւն

## ՆՈՒԷՐՆԵՐ

### «Համբաւաբերի» տարածման համար

Խմբագրութիւնս շնորհակալութեամբ ստացաւ Ղուբայից պ. Ն. Ա. Սարումեանից նուէր 36 ռ., ուղարկելու աղքատ գիւղական հայ դպրոցներին 9 օրինակ «Համբաւաբեր»։

---

Խմբագրութեանս նուիրուած «Համբաւաբերի» օրինակները ուղարկւում են ևս հետևեալ գիւղական դպրոցներին.

պ. Հ. Սարումեանի հաշուով մէկ օրինակ Ղուբայի հայոց դպրոցին և ութ օրինակ Ղարաբաղի թեմի դպրոցներին, համաձայն թեմական առաջնորդի պաշտօնակատար Ջաւէն վարդապետի գրութեան։

Այդ դպրոցների ցուցակը կը տպագրուի «Համբաւաբերի» հետագայ համարում։

## ՊԵՏԱԿԱՆ ԿԵԱՆՔ

Պետական Դուման անցեալ շաբաթ զբաղուած էր ներքին գործերի մինիստրութեան բիւջէի քննութեամբ։ Ինչպէս սովորաբար, այս առիթով Դուման մի քանի նիստերի մէջ խիստ քննադատութեան ենթարկեց կառավարութեան ներքին քաղաքականութիւնը և մասնաւորապէս ներքին գործերի մինիստր Խւոստովի գործունէութիւնը։ Խօսեցին մօտ երեք տասնեակ հռետորներ. միայն, ինչպէս միշտ, ծայրայեղ աջակողմեաններն էին, որ կառավարութեան պաշտպան հանդիսացան։ Մեղադրանքների առանցքը այն առաջնակարգ կենսական հարցերն էին, որոնք կապուած են ներկայ մեծ պատերազմի հետ, այն է՝ թանգութիւն, պարենաւորման դժուարութիւններ։ Շարունակ շեշտւում էր, որ ներքին քաղաքականութիւնը գնում է հակառակ հայրենիքի և ժողովրդի շահերին և որ անկերպարան դրութիւնից կարելի է դուրս գալ միմիայն այն դէպքում, եթէ պատասխանատու մինիստրներ լինեն։ Կովկասեան գործերի մասին խօսեց միայն պատգամաւոր Ջաֆարովը, որ ասաց թէ աջարցի մահմեդականները զուր հալածանքների են ենթարկուել և կառավարութիւնն առհասարակ ուշադրութիւն չէ դարձնում մահմեդականների կարիքների վրայ։

Մարտի 3-ի նիստում Դուման մի շարք օրէնսդրական ենթադրութիւններ ընդունեց, որոնք վերաբերում են ինքնավարութեան։ Ամենից առաջ ցանկալի համարուեց, որ կառավարութիւնը մշակէ քաղաքային ինքնավարութեան մի նոր օրինագիծ, որ աւելի համապատասխանէր ժամանակակից պահանջներին, քան ներկայումս գոյութիւն ունեցողը։ Ներքին գործերի մինիստրութեան ներկայացուցիչը յայտարարեց, որ կառավարութիւնը համաձայն է այդ բանին և նոյն իսկ բացատրեց թէ ինչ սկըզ-

բունքներ է ենթադրում մտցնել կառավարութիւնը նոր օրինագծի մէջ։ Ամենից առաջ պիտի լայնացուի ընտրողական ցենզը. ընտրական վարձողներն էլ պիտի իրաւունք ունենան մասնակցելու ընտրութիւններին, կանայք պիտի ընտրելու իրաւունք ստանան, ինքնավարութեան սահմանները պիտի ընդլայնուեն և այլն։ Ապա Դուման լսեց չորս առանձին առաջարկութիւն զեմստւոյի ինքնավարութիւն մտցնելու Թերեքի, Դոնի շրջաններում, Արխանգելսկի նահանգում և Սիբիրում։ Բոլոր առաջարկութիւններն էլ ընդունուեցին և Դուման առհասարակ ցանկութիւն յայտնեց, որ պետութեան բոլոր մասերում մտցրուած լինի զեմստւօ։ Կովկասեան պատգամաւոր Սկոբելեը թիւրիմացութիւն համարեց որ բոլոր վերոյիշեալ տեղերի հետ դրուած չէ և Անդրկովկասը, որ նոյնպէս վաղուց սպասում է զեմստւօ ստանալու։

Մարտի 2-ին ներքին գործերի մինիստր Խւոստովը հրաւիրուեց մինիստրների նախագահ Շտիւրմերի մօտ։ Տեսակցութիւնը տևեց 10 րոպէ. Խւոստովը հրաժարական տուեց, որ ընդունուած է։ Ներքին գործերի մինիստրի պաշտօնը յանձնուած է մինիստրների խորհրդի նախագահ Շտիւրմերին։ Խւոստովի հրաժարման հետ միաժամանակ լրագրութեան մէջ սկսուեցին մի շարք մերկացումներ, որոնք արատ են գցում նրա գործունէութեան վրայ։

Բարձրագոյն հրամանով առաջարկուած է Պետական Խորհրդի առաջին դեպարտամենտին քննել նախկին զինուորական մինիստր գեներալ Սուխոմլինովին դատի ենթարկելու հարցը։ Ինչպէս յայտնի է, գեներալ Սուխոմլինովը մեղադրւում է մի շարք մեծամեծ զեղծումների մէջ։ Յայտնի է որ ռուսական զօրքը, չնայած իր հերոսական ջանքերին, անցեալ տարուայ ապրիլից չկարողացաւ դիմադրել գերմանական արշաւանքին, որ առաջանալով գրաւեց համարեա ամբողջ Լեհաստանը։ Այդ անյաջողութեան ամենագլխաւոր պատճառ համարւում է այն, որ ռուսական բանակը զէնքի և ռազմամթերքի սաստիկ պակասութիւն ունէր, մինչդեռ գերմանացիները առաջանում էին գլխաւորապէս այն պատճառով, որ կարողանում էին զարհուրելի կրակ թափել ռուսների վրայ։ Ռուսական ռազմամթերքների պակասութեան պատճառը զինուորական մինիստր Սուխումլինովն էր, որ հեռացուեց պաշտօնից և նրա հեռանալուց յետոյ էր միայն, որ ռուս բանակը կարողացաւ մեծ քանակութեամբ ռազմամթերք ստանալ և կանգնեցնել թշնամու առաջխաղացութիւնը։ Սուխոմլինովի հրաժարեցման հետ միասին կազմուած էր մի բարձրագոյն ատեան՝ գործը քննելու համար։ Այդ ատեանի հաւաքած նիւթերի հիման վրայ էլ Պետական Խորհուրդը պիտի որոշէ՝ պէտք է Սուխոմլինովին դատի ենթարկել թէ ոչ։ Եթէ ընդունեց դատի ենթարկելը, սա կլինի առաջին դէպքը որ մի մինիստր Ռուսաստանում տարւում է դատարանի առաջ։

Հրատարակուած է նոր ներքին փոխառութիւն երկու միլիարդ ռուբլու։ Բոլոր բանկային հաստատութիւնների մէջ և պետական գանձարանների ու հասարակական հիմնարկութիւնների մէջ արդէն բացուած է բաժանորդագրութիւնը։ Պայմանները նոյնն են, ինչ նախընթաց փոխառութեան ժամանակ. տոկոսն էլ նոյնն է— $5\frac{1}{2}$ տարեկան։

---

## Մ. ՊԱՊԱՋԱՆԵԱՆԻ ՃԱՌԸ

Պետական Դումայի մէջ մարտի ութի նիստում պատգամաւոր Միքայէլ Պապաջանեանը արտասանեց հետեւեալ ճառը.

Պապաջանեան շեշտում է, որ Անդրկովկասը միշտ համարուել է ռուսական թագի ադամանդ։ Դժբաղդաբար այդ ծայրերկրի շահերին ցարդ քիչ ուշադրութիւն են դարձնում։ Տեղական բիւրոկրատիան իր վարչական գործելակերպի մէջ, ժողովրդից կտրուած լինելու պատճառով, ղեկավարւում է իր շահերով, որոնք յաճախ չեն համապատասխանում պետութեան շահերին։ Երկրի մէջ պահպանւում է առանձին ազգութիւնների միջև եղած արհեստական անջատումը. ընդ ամէն իբրև քաւութեան նոխազ Կովկասեան ադմինիստրացիան ընտրել է հայերին։ Հայերը սեպարատիստ էին յայտարարուած։ Այժմ պատերազմը ցոյց տուաւ, թէ որքան մոլորուած էին Կովկասեան իշխանութիւնները, թէ ում կողմն էր իսկապէս հայերի համակրանքը։ Բայց Կովկասեան բիւրոկրատիան թշնամաբար ընդունեց հայերի խանդավառութիւնը։ Հայերի մասին զրպարտիչ լուրեր բաց թողին, որ իբր թէ Սարիղամիշի անտառներում հայերը հաւաքում էին ռազմամթերքը թիւրքերի համար։ Այս բանն ասւում էր այն ժամանակ, երբ առաջաւոր դիրքերի վրայ ռուս գնդերի հետ կողք-կողքի կռւում էին հայկական դրուժինաները, իսկ սահմանի այն կողմը հայերը զէնք էին առել իրենց կեանքը փրկելու համար։ Յետոյ Կարսի շրջանի հայ բնակչութեան վրայ էին ձգել մեղքը այն զինուորների ու տառապանքների համար, որ կրել էին թիւրքահպատակ քիւրդերն ու թիւրքերը։ Ճառախօսը ողջունում է Մեծ Իշխան Փոխարքայի հրամանը, որով դադարեցուած է աջարեցոց դատը,— մի դատ, որին տեղական վարչութիւնը ջանում էր ազգային վէճի բնոյթ տալ, հայ-գիւղացուն ներկայացնելով իբրև յարձակուող կողմ։ Ճառախօսը յոյս ունի, որ կարգադրութիւն կարուի դադարեցնելու Կարսի շրջանի հայերի դէմ ուղղուած դատերը։ Կովկասում բնականոն կեանքը վերականգնելու համար Պապաջանեանը անհրաժեշտ է համարում վերակազմել երկրի վարչութիւնը Նորին Կայսերական Բարձրութիւն Մեծ Իշխան Նիկոլայ Նիկոլայևիչի յայտարարած ազգութիւնների հաւասարութեան սկզբունքի հիմունքների վրայ և բաղձանք է յայտնում, որ զեմստւային ինքնավարութիւն մտցնելիս և տեղական տարրերը պետական ծառայութեան կոչելիս անտես չառնուի կովկասեան ազգութիւններից ոչ մէկը։

---

## ՀԱՆԴԷՍ ՀԱՅ ԲԱՆԱՍՏԵՂԾՈՒԹԵԱՆ

III

### ԲՐԻՒՍՈՎԻ ԴԱՍԱԽՕՍՈՒԹԻՒՆԸ*)

*(Վերջ)*

Բրիւսովը անցնելով ԺԴ դարի հեղինակներին առանձին կանգ առաւ նախ Յովհաննէս Երզնկացու և Ֆրիկի վրայ։ Յ. Երզնկացու բանաստեղծութեան նիւթը վարդապետական է։ Նրա բանաստեղծական գլխաւոր արժանիքն այն է, որ առաջինն սկսեց օգտուել Ս. Գրքի գունեղ և հիւթալից օրինակներից։ Յ. Երզնկացին յայտնի է իւր բազմաթիւ արձակ գրուածքներով և թարգմանութիւններով, որոնցից ուշադրութեան արժանի է Թովմա Աքուինացու գիրքը։

Ֆրիկը, հայոց Սաադին, նոյնպէս վարդապետական է իւր ուղղութեամբ, բայց խօսում է կենդանի և ժամանակակից անցքերից։ Նա յանդիմանում է և բուռն կերպով բողոքում ժամանակի և շրջապատի չարիքների դէմ։ Իւր հրաբորբոք ոտանաւորներով մեղադրում է ոչ միայն Աստուծու անարդարութիւնը, այլ և ծառանում է իրերի էութեան, աշխարհի կարգերի դէմ։ Այսպէս յայտնի է նրա «Գանգատը», ուր զգալի են արևմուտցու բողոքը, բողոքականութեան և վերածնութեան հովերը։ Յ. Երզնկացու, Ֆրիկի և մի քանի այլ բանաստեղծների շնորհիւ միջնադարեան հայ բանաստեղծութիւնն ազատւում է իւր նախկին եկեղեցական ուղղութիւնից։

Մնում էր մի քայլ ևս անել, որպէս զի բանաստեղծութիւնն իսկապէս դառնար աշխարհիկ ու ժողովրդական։ Եւ այս քայլն անա արաւ Կոստանդին Երզնկացին։ Այս նշանաւոր բանաստեղծն առաջին անգամ սկսեց խօսակցական և ամենքին հասկանալի

*) Տես «Համբաւաբեր» № 7։

տուած էր համարում պատերազմը Ասիայում և Մուխտար փաշային կանչեց Կ. Պոլիս։

Պատերազմական գործողութիւններ այլ ևս չը տեսաւ Էրզրումը։ Նրա ճակատագիրն յանձնուած էր ժամանակին, երբ անխուսափելի սովը պիտի հարկադրէր բնակիչներին անձնատուր լինել ռուսներին։ Բայց այդ միջոցին բարձրացաւ ահաւոր բնութիւնը, հաւասարապէս թշնամի երկու կռուող կողմերին, հաւասարապէս անողոք երկուսի վերաբերմամբ։ Սկսուեց Բարձր-Հայքի ձմեռը, որ առանձնապէս դաժան էր այդ տարին։ Ձիւնը կուտւում էր երեք արշինով, սոսկալի բուքերը շարունակւում էին շաբաթներով։ Պաշարուած, աղտոտութիւններով լի քաղաքի մէջ ճարակեց սոսկալի բծաւոր տիֆը, որ սկսեց ջարդել թիւրքական զօրքը։ Օրական հարիւր հոգուց աւել էին մեռնում։ Քաղաքը դարձել էր մի ահագին հիւանդանոց։

Ռուս բանակի դրութիւնը պակաս վատթար չէր։ Նա բառիս բուն նշանակութեամբ թաղուած էր ձիւների մէջ։ Ապրում էր կամ գիւղական ստորերկրեայ գոմերի մէջ կամ, աւելի շատ, վրանների տակ, որոնց վրայ մի արշին հաստութեամբ ձիւն էր նստում։ Բուքերն ու սառնամանիքները կտրեցին ամեն մի հաղորդակցութիւն ռուսական սահմանագլխի հետ և պարէնաւորման գործը կանգ առաւ։ Զօրքը մնաց առանց կենսական մթերքների, առանց հագուստի, առանց սպիտակեղէնի։ Ոչ միայն զինուորները, այլ և սպաները ցնցոտիների մէջ էին։ Երբեմն 5—10 օրով հաց չէին ուտում։ Երկիրը միանգամայն աւերուած էր և պաշարներ հայթայթել անկարելի էր։ Եւ ահա այս հանգամանքների մէջ անխուսափելի տիֆը և այլ հիւանդութիւններ սոսկալի հիւրի պէս յայտնուեցին ռուսաց բանակումն էլ։

Նրանք գալիս էին թիւրքական բանակից և մեծաքանակ զոհեր տարան նաև ռուսներից։ Վերջի վերջոյ այդ համաճարակներն աւելի սարսափելի հանդիսացան քան ինքը պատերազմը։ Հիւանդութիւնը չէր խնայում ոչ ոքին. տիֆից մեռան մի շարք գեներալներ։

Գեներալ Լորիս-Մելիքեանը անխոնջ աշխատում էր համաճարակի դէմ կռուելու համար։ Նա զօրքերը տեղաւորում էր նոյն իսկ հեռաւոր գիւղերում, մինչև Խնուս, որ գրաւեցին ռուսները այդ ժամանակ։ Բայց հաղորդակցութեան յարմարութիւնների բացակայութիւնը, բժիշկների և բժշկական միջոցների պակասութիւնը անհնարին էին դարձնում յաջող և յաղթական կռիւը։

Բայց և այնպէս, ռուսաց բանակը մնում էր բանակ, կանգնած իր դիրքերում, զէնքը ձեռքին։ Նա դեռ բաւականաչափ ահաւոր էր թիւրքերի համար, որոնք կատարեալ կազմալուծման էին հասել և չէին անգամ մտածում որևէ փորձ անել իրանց թշնամիների դէմ, օգտագործել նրանց նեղ դրութիւնը։ Ռուսական բանակի յաղթութիւնները այժմ, դժուար պայմանների մէջ, նրա ամենալաւ պաշտպաններն էին։

Եւրոպայում և Ասիայում ջարդուած Թիւրքիան հաշտութիւն խնդրեց և 1878 թ. յունուարի 19-ին Ադրիանուպոլսում կնքուեց զինադադարի դաշինքը, որի պայմաններից մէկն էլ այս էր, որ թիւրքական զօրքերը պիտի հեռանան իրանց մի քանի բերդերից և յանձնեն ռուսներին։ Այդ բերդերից մէկն էլ Էրզրումն էր։ Սակայն յօժարութեամբ չէր որ թիւրքերը կատարեցին այս պայմանը։ Հարկաւոր եղան երկար բանակցութիւններ, մինչև որ փետրուարի 8-ին թիւրքական զօրքն սկսեց մաս մաս դուրս գալ քաղաքից։ 10-ին ռուսներն արդէն գրաւել էին քաղաքը։

Նրանք այդտեղ մնացին ամբողջ եօթն ամիս։ Եւ այդ եօթն ամիսները մի ամբողջ շրջան են կազմում հայոց պատմութեան մէջ։

(Կը շարունակուի) Լէօ

## ԳԱՒԱՌ

ԱՐԴԱՀԱՆ, 23 փետր.—Արդահանի գաղթը եղել է 1914 թ. դեկտեմբերի 14-ին։ Քաղաքից փախել են 100 տուն հայ, 100 ընտանիք յոյն, 100 տուն էլ ռուս-մալական։ Խուճապի պատճառով շատ քիչ բան են կարողացել հետները վերցնել, այն էլ 40 ֆուրգոնի չափ թալանի ենթարկուել Խասքէօյի և Հաջի Ալի հարևան գիւղերի քրդերի կողմից։

Խաղաղութիւնը վերկանգնելուց յետոյ վերադարձել են 30 հոգի անընտանիք մարդիկ, 20 հոգի էլ սակաւ ընտանիքաւորներ։

Կառավարութեան թելադրանքով վերադարձել են քաղաքին կից՝ Նորաշէն կոչուած արուարձանի 50-ի չափ ընտանիքներ էլ, որոնք ցրուած Ալեքսանդրապոլի շրջանում՝ օգտւում էին պետական նպաստից։ Այժմ նորա ոչինչ չեն ստանում։

Պատերազմից վնասուածների թիւը Արդահանում հասնում է 127 հայ ընտանիքի, որոնցից 61-ը մեծ կարիք ունեն ապրուստի, շորի, տեղաշորերի, երկրագործական գործիքների, լծկանների և որ գլխաւորն է՝ սերմացուի։ Ուռուտ գիւղում կայ 30 ընտանիք, որոնցից կարիքաւոր են 10 ընտանիք։

Այդ կարիքների վրայ պէտք է աւելացնել բժշկական օգնութեան սաստիկ հրամայողական պահանջը, մանաւանդ որ բծաւոր տիֆ ևս սկսել է երևալ։

Արդահանի շրջանում ապաստանել են 880 հոգի դրսեցի գաղթական Շաւշէթի, Օկրոպակետի, Էնիրարանի, Սաթլէթի գիւղերից, Օլթիից, Բերդուսից և Տանձոտից։ Գաղթականները տեղաւորուած են հետևեալ վայրերում. Արդահանում 148 ընտանիք կամ 688 հոգի, Ուռուտում 25 ընտ. կամ 112 հոգի, Մերտենեկում 1 ընտ. 7 հոգի, Դորդբիլխայում 2 ընտ. 15 հոգի և Սամգէլակում 10 ընտ. 58 հոգի։

Աւելորդ չենք համարում յայտնելու՝ ա) որ անհրաժեշտ է միջնորդել, որպէսզի Արդահանի գաղթականներին նպաստ բաշխուելիս տրուի նաև աշխատանքի ընդունակներին էլ, որովհետև նոքա ապրում են բացառիկ պայմաններում. բ) գաղթականներին բնակարաններ յարմարեցնելու և վառելու համար պէտք է դրամական օժանդակութիւն ցոյց տրուի փայտ բերել տալու։ Գ) պատերազմից վնասուածներին պէտք է նոյնպէս նպաստ հասցնել մինչև ամառ. դ) բոլորին անխտիր պէտք է գարնան սերմացու, գործիքներ և լծկաններ հասցնել և ե) պէտք է ուղարկել հագուստ, տեղաշոր և բժշկական օգնութիւն։

***

ԲԱԹՈՒՄ, 26 փետր. Տրապիզոնի և շրջակայքի հայերի թւի և կացութեան մասին այժմ ստոյգ տեղեկութիւններ չկան, բայց դատելով տեղումս ստացուած մասնաւոր նամակներից և վերջերս Խոփի, Արխավէի և Աթէնէի կողմերից մեծ թւով քաղաքս եկած ու բերուած գերիներից ու թուրքերից առնուած տեղեկութիւններից, կենդանի մնացած հայերը վերին աստիճանի նեղ դրութեան մէջ են և չունեն հանգուստ, ճերմակեղէն, ուտելիք։

Ամսիս 25-ին տեղի ունեցած խորհրդակցութեան ժամանակ ընտրուեցաւ 6 հոգուց մի մարմին, որ առաջին իսկ նուագին պէտք է մեկնի Տրապիզոն։ Այդ անձինք են՝ Շահ-Մելիքեան, Հ. Ֆէթուաճեան, Գ. Ղազարոսեան, Յ. Դաւթեան, Յ. Սարեան և Մ. Էմիրեան։ Որոշուեց այժմէն իսկ հոգալ վերոյիշեալ կարիքների մասին։

Խորհրդակցութիւնը դիմել է ա) Հ. Կ. Կոմիտէին և Կ. Հ. Բ. Ընկ., խնդրելով կարելոյն չափ շուտով փոխադրել մի որոշ գումար, որպէսզի առաջին իսկ նուագում, հէնց որ Տրապիզոնը կառնուի, կարելի լինի գործ սկսել. բ) պաշտօնական գրութեամբ տեղիս բերդապետից (կոմենդանտից) խնդրել է, որ նախ այդ ընտրուած անձանց ճանաչէ որպէս պաշտօնական անձնաւորութիւններ և ապա դիւրութիւն տայ դոցա գործ սկսելու Տրապիզոնում և շրջակայ երկրներում, հէնց որ յարմարութիւն ներկայանայ։

*Այս մարմինը գործելու է տեղւոյս Կ. Հ. Բ. Ընկ. հրահանգով և ցուցմունքներով։*

* * *

*ԲԱԹՈՒՄ.—Փետրուարին հայ հասարակութեան կողմից պ. պ. Աշոտ Մնասյեանց, Յարութիւն Զաքարեանց և չորս ուրիշ անձինք ընծաներ էին տարել Նորանուաճ Ռիզէ քաղաքը զօրքերին բաժանելու։*

*Այնտեղ նրանք իմանում են, որ տաճիկները, Տրապիզոնի հայերին կոտորելուց յետոյ, նաւով հայ մանկահասակ կենդանի մնացած երեխաների բերել են Ռիզա իրենց մահմեդականների մէջ բաժանելու։ Երեխաները եղել են 3-ից մինչև 12 տարեկան հասակի։ Ենթադրւում է, որ այդ երեխաների թիւը կը հասնի 400—500 հոգու։ Տղայ երեխաներին մահմեդականացրել են, կատարելով նրանց վրայ իրենց կրօնական ծիսակատարութիւնը։*

*Երբ այդ տեղեկութիւնը ստացուեց, Կ. Հ. Բ. Ընկ. տեղական ճիւղի վարչութիւնը արտակարգ նիստ հրաւիրեց և կազմեց մի մասնախումբ՝ գնալու Ռիզէ և այնտեղ ու շրջաքայքում որոնելու հայ որբ երեխաներ։*

*Վարչութեան նախագահ Մեսրոպ քահանայ Մելեանցը դիմեց գեներալ Լիախովին ու ստացաւ գնալու թոյլտուութիւն մասնախմբի անդամների համար։ Սկսուած է հայ որբերի որոնումը, որոնց մաս մաս բերում են Բաթում։ Բարեգ. ընկերութեան ճիւղը Ռիզէ հիմնել է մի ժամանակաւոր ապաստարան. գտնուած որբերին նախ բերում են այդ ապաստարանը, իսկ յետոյ այնտեղից փոխադրում են Բաթում։ Ճիւղի վարչութիւնը, ստանալով խորհրդից և Հայկական Կենտրոնական Կոմիտէից 300 ռուբ. ու թոյլտուութիւն՝ բաց անելու ապաստարաններ որբ երեխաների համար, որոշել է ունենալ երկու ապաստարան՝ մէկը Բաթում, իսկ միւսը Կորուլէթ։ Բաթումի ապաստարանն արդէն բացուած է։*

* * *

*Կորսուած տղայ.—Վանի մեծ յուլիսեան գաղթի ժամանակ Բերկրի-կալայում խուճապի միջոցին կորել է Վանի Թառական գիւղի բնակիչ 15 տարեկան պատանի Ոսկան Յովհաննիսեանը։ Հին-Նախիջևանի Հայոց Հոգևոր կառավարութիւնը խնդրում է պատանու տեղն իմացողներից յայտնել իրան։ Պատանու մայրը՝ այրի Սառան այժմ ապրում է Հին-Նախիջևանի գաւառի Կզնուտ գիւղում։*

* * *

*ՑԱՐՍԿԻԷ-ԿՈԼՈԴՑԻ, 2 մարտի.—Վարդանանց տօնին այստեղ կայացաւ երեկոյթ յօգուտ Կ. Հ. Բ. Ընկ. տեղիս ճիւղի կառուցելիք ամառային թատրոնի, նախաձեռնութեամբ օր. Վառվառէ Տէր-Բարդողիմէոսեանի։ Երեկոյթում երգուեցին երգեր և տեղի ունեցան հայկական պարեր։ Մասնակցողները հագել էին զանազան հանդերձներ, որը լաւ տպաւորութիւն թողեց հանդիսականների վրայ։ Մրցանակներ ստացան օր. Վ. Տէր-Բարդողիմէոսեան, որը լաւ ներկայացնում էր գնչուհու տիպը և Օհանջան Օհանջանեանը, որը ներկայացնում էր Սալան-Բալասի։ Զուտ արդիւնք մնաց մօտ 60 ռ.։ Այս նպատակի համար այժմ կայ 115 ռուբ.։*

*Թանգութիւնն այստեղ ընդունել է անհելի չափեր։ Հացի ֆունտը արժէ 8 կ. (առաջ 3—3½ կ.), պանիրը ֆունտը 60 կ. (առաջ 20 կ.), իւղ ֆ. 1 ր. 20 կ. (առաջ 40 կ.), մի շիշ գինի 70 կ. (առաջ 15 կ.), ձու հատը 4 կ. (առաջ 1 կ.), 1 կճուճ կաթ 15 կ. (առաջ 5 կ.), մի սայլ փայտը 8 ռ. (առաջ 3 ռ.), միս ֆունտը 25 կ. (առաջ 10—12 կ.), շաքար 30 կ. (առաջ 16 կ.), նաւթ 9 կ. (առաջ 5 կ.)։ Իսկ կօշիկների և ճօթեղէնի գներն անասելի են։*

*Յ. ք. Գրիգորեան*

## ՏԱՐԵԳԻՐ ԲԱՐԵԳՈՐԾՈՒԹԵԱՆ

### ՆՈՒԷՐՆԵՐ

*—Գ. Մ. Ա. Խանզուլեանը նուիրել է յօգուտ գաղթականների չորս պարկ (20 պուդ) ալիւր։*

*—Տիկ. Օլգա Վարդպատրիկեանից ստացուել է յօգուտ. ընկ. ճաշարանի տասն ռ.։*

### ՆՈՒԻՐԱՏՈՒՆԵՐԻ ԱՆՈՒԱՆԱՑԱՆԿ

*Կ. Հ. Բ. Ը. Բաշ-գիւղի ճիւղի փետրուար ամսուան մուտքը բացի անդամավճարներից։*

*1) օր. Աղնիւ Տէր-Յակոբեանի նշանադր. հանդիս. 13 ռ.*
*2) օր. Աղնիւ Մարգարեանի » » 9 ռ. 50 կ.*
*3) օր. Վարսենիկ Նիկոյեանի » » 9 ռ. 20 կ.*
*4) օր. Վարդեր Տէր-Սարգսեանի » » 20 ռ.*
*5) Սեներիմ Մելիքեանի պսակադրութեան » 13 ռ.*
*6) Վարդան Ենկոյեանի » » 2 ռ.*
*7) Տիկին Մարիամ Աղնաւուրեանից նուէր 3 ռ.*
*8) Յարութիւն Լիւթիկեանից նուէր 3 ռ.*
*9) Արմուղլի գիւղում ներկայացումից զուտ արդիւնք մնաց 107 ռ. 89 կ.*
*10) Վարդանանց տօնի առթիւ կայացած երեկոյթից.*
*ա) Բուֆէտից զուտ արդիւնք 15 ռ.*
*բ) Հանդիսականներից նուէր 133 ռ.*

*Նուիրատուներն են—Սարգիս քհն. Մարգարեան 15 ռ., Յ. Ղազանճեան և եղբ. Մախաթճեաններ 10-ական ռուբլի, Խ. Թարզեան 6 ռ., Յ. Ստեփանեան, տիկ. Ն. Բալասանեան, Փ. Բալասանեան, Գ. Ստեփանեան, Գ. Ալէյեան և Զ. Յովհաննէսեան 5-ական ռ., տիկ. Մ. Յակոբեան, Գ. Վարդանեան և Պ. Ներսէսեան 4-ական ռ., Գ. Ղազարեան, Գ. Եղիազարեան, Ա. Տ.-Մարտիրոսեան, Մ. Գասպարեան, Յ. Միս. Բալասանեան, Տ. Բալասանեան, Մ. Տ.-Սարգսեան, Ղ. Պետիկեան և Մ. Տ.-Սարգսեան 3-ական ռ., Գ. Պետրոսեան, Ս. Կարապետեան, Ն. Արզարեան, Մ. Կիրակոսեան, Հ. Սիմոնեան, տիկ. Ս. Սաքոյեան, օր. Վ. Բալասանեան, Ա. Այվազեան և Ս. Մնոյեան 2-ական ռ., Մ. Ստեփանեան,* Максимъ Гурчишвили, *Ա. Կիրակոսեան, Մ. Մելիքսէթեան և Ս. Մուրադեան 1-ական ռուբլի։*

* * *

*Յօգուտ Կ. Հ. Բ. ընկերութեան նպաստ ստացող դպրոցների՝ 1. պ. Մինաս Սուլխանեանից 300 ռ. 2, Իւան Ա. Մանթաշեանից 600 ռ., 3, Եղիսաբեթ Ս. Միրզոյեանից 600 ռ., 4. Իւան Ալէք. Շաղինեանից 150 ռ.։*

* * *

*Յօգուտ փախստականների Հայկ. Կենտ. Կոմիտէի տիկ. Մ. Մ. Միրիմանեանից ի յիշատակ իր ամուսին Նիկոլայ Օ. Միրիմանեանի 200 ռ., 1. Վասիլի Ս. Եղիազարեանից հանգուցեալ տ. Ս. Տէր-Աստուածատուրեանի դագաղի վրայ պսակ դնելու փոխարէն 50 ռ., 2. Յարութիւն Մկրտչեանից 10 ռ., 3. Լոզովայի կայարան.—Կարապետ Մարտիրոսեանից 30 ռ. 4. Ախալցխա. Հայ կանանց բարեգործական ընկերութիւնից 115 ռ. 5. Ալէքսանդրիայից (Խերսոնսկի նահանգ) պ. Չխալեանից 30 ռ., 6. Զաքաթալա պ. Ալէքսանդր Գէորգեանից իր հանգուցեալ հօր՝ Յովհաննէս Գէորգեանի մահուան տարելիցի հոգեհացի փոխարէն 40 ռ. և տեղական չքաւորներին 10 ռ.*

* * *

*Յօգուտ Կ. Հ. Բ. ընկ. աշակերտական ճաշարանի տիկին Մ. Մ. Միրիմանեանից ի յիշատակ իր հանգուցեալ ամուսին Նիկ. Օ. Միրիմանեանի 200 ռ.*

* * *

*Կ. Հ. Բ. ընկ. Զաքաթալայի ճիւղի վարչութիւնից յօգուտ հայ կամաւորական խմբերի 100 ռ.։ Այս գումարը յանձնուեց Ազգային Բիւրոյին։*

## ՃԻՒՂԵՐ

*Ախալցխա, 27 փետրուարի.*—Կ. Հ. Բ. ը.-թեան Ախալցխայի ճիւղի վարչութիւնը մօտ ժամանակներս բաց է անելու քաղաքումս օսլայի լուացարան (крахмальн. заведеніе), այդ արհեստը տեղացիների մէջ տարածելու համար, որի կարիքը Ախալցխայում զգալի է։ Այս արհեստանոցում բացառապէս սովորելու են կանայք, ձրի, միայն այդ նպատակին ընկերութիւնը ընդունում է կամաւոր նուէրներ։

— Ախալցխայի գաւառի Ծուղրութ և Տամալայ գիւղերի հասարակութիւնները Կ. Հ. Բ. Ընկ. Ախալցխայի ճիւղի վարչութեան միջոցով դիմել են նոյն ընկերութեան խորհրդին, իրանց համար մի վագոն ալիւր ուղարկելու համար։

—Ինչպէս յայտնի է, 1914 թուի վերջին ամիսներում, Ախալցխայում, Կ. Հ. Բ. Ընկ. տեղական վարչութեան նախաձեռնութեամբ և քաղաքի բոլոր հաստատութիւնների ու ընկերութիւնների ներկայացուցիչների խառն միացեալ ժողովով ընտրուել է տեղական Հայկական կոմիտէ՝ յատկապէս պահեստի ու կամաւոր զինուորների ընտանիքներին, փախստականներին, հիւանդանոցներին և ընդհանրապէս պատերազմից վնասուածներին օգնութիւն հասցնելու համար։

Առաջին տարին կոմիտէտը բաւականին արդիւնաւոր ու եռանդուն գործունէութիւն ցոյց տուեց, որով գրաւեց ժողովրդեան յարգանքն ու վստահութիւնը։ Դժբախտաբար, վերջին ժամանակներս կաղում է և անդամների մեծամասնութեան անտարբերութեան ու անպարտաճանաչութեան շնորհիւ համարեա ամիսներով նիստեր չեն լինում։ Այս խորհրդաւոր և պատմական ժամանակ Հայկական կոմիտէտի գոյութիւնը և գործունէութիւնը շատ կարևոր է և անհրաժեշտ, ուստի դէպի գործ, դէպի պարտաճանաչութիւն։

Թ.

***

Կ. Հ. Բ. Ընկ. Ղափանի ճիւղի վարչութիւնը իր 1916 թուի նախահաշուի մէջ մտցրել է մի յատուկ գումար՝ 4000 ռ. գրադարան-ընթերցարանի համար սեփական շէնք կառուցանելու Ղաթարեան հանքերում։

Այդ գումարը վարչութիւնը յոյս ունի նուիրատուութեամբ ծածկելու։

***

Նախուայ վիճակի նորաբաց Կ. Հ. Բ. Ընկ. Դայարաշի ճիւղի վարչութեան անդամներ ընտրուել են—նախագահ՝ Եփրեմ քահ. Տէր-Ստեփանոսեան, փոխ-նախագահ՝ Մկրտիչ Սաֆարեան, քարտուղար՝ Արտաշէս Կարապետեան, գանձապահ՝ Պատուական Ղազիմեան։

— Բաշ-գիւղի ճիւղի փետրուար ամսուայ մուտքը, բացի ամսավճարներից, եղել է 318 ռ. 89 կ.։

***

Հայկ. Կենտր. Կոմիտէ.—Մարտի 10-ին, հինգշաբթի օրը, կայացաւ Կենտրոնական Կոմիտէի հերթական նիստը։

Նախագահը, նախկին նիստի արձանագրութեան ընթերցումից յետոյ, յայտնեց, որ ստացած հեռագիրները, գրութիւնները և երկրից եկած տեղեկութիւնները ցոյց են տալիս, որ նորանուաճ երկրներում դեռ գտնւում են կենդանի մնացած անհատներ և մեծ խմբեր հայերի, որոնք մասամբ ծածկուած են եղել սարերում, անմարդաբնակ վայրերում, մասամբ էլ գերի են եղել քրդերի և տաճիկների գիւղերում։ Բոլորի դրութիւնը վերին աստիճանի ծանր է և յուզիչ։ Ապա սկսեց զեկուցանել ստացուած հեռագրերը.

1. Խնուս, Հ. Կ. Կոմիտէի լիազօր Տ.-Գէորգեանից. Խնուսի և նրա շրջակայքում տեղաւորուած են 1900 փախստական. փոխադրել Ալաշկերտ անհնարին է, որովհետև փոխադրելու համար չկան սայլ և այլ միջոցներ. Ձեր ուղարկած փախստականների շորերի մի մասը ստացուած են։

2. Իգդիր, պ. Ս. Մատինեանից. Առաջին ստացուած շորերը փոխադրել եմ. նոր 188 հակ շորերի Դիադին փոխադրելու համար, այնտեղից էլ Խնուս պահանջում են 2500 ռ. սպասում եմ Ձեր կարգադրութեան։

3. Մուշ, Տէր-Գէորգեանից. Մուշ ժողովուել է 3000-ից աւելի փախստական. ամեն կողմից հարիւրներով թափւում են Մուշ. փախստականների մէջ տարածուած են տարափոխիկ հիւանդութիւններ։

4. Մուշ, հրամանատար հայկական երկրորդ խմբի պոլկովնիկ Տէր-Աւետիքեանից. Մուշ հաւաքուել են 6.000 հայ փախստականներ—քաղցած և մերկ։ Օգնութիւնը անյետաձգելի է։ Շուտ հասցրէք ուտելիք, շոր և ոտնամաններ։

5. Մուշ, հայկական առաջին կամաւորական խմբի հրամանատար Անդրանիկից։ Մուշ քաղաքում ապաստանել են 5—6 հազար հայ փախստականներ։ Անհրաժեշտ է շուտափոյթ բժշկական և սննդի օգնութիւն, հարկաւոր է սրանց տեղափոխել, բոլորովին ուտելիք և միջոցներ չկան։ Եթէ օգնութիւնը ուշանայ, բոլոր փախստականները կը կոտորուեն։ Կոմիտէն որոշեց. ա) անմիջապէս հեռագրով փոխադրել Իգդիր լիազօր Ա. Շարաֆեանին 10.000 ռ., որ նա այնտեղից ուղևորուի իր օգնականների հետ Խնուս և Մուշ և անմիջապէս կազմակերպի փախստականների համար օգնութիւն, գնելով տեղում ինչ որ հնարաւոր կը լինի, իսկ այս տեղից էլ աշխատել ուղարկել ալիւր, շաքար, թէյ. շորեր արդէն ուղարկուած են։ բ) Իրերի տեղափոխութեան համար և փախստականների փոխադրութեան համար այս կողմերը, եթէ հարկաւոր լինի, իրաւունք տալ նոյն պ. Շարաֆեանին կազմակերպել սեփական տրանսպորտ, գնել սայլեր, եզներ, ձիեր, որոնց համար առանձին փոխադրել առայժմ 3,500 ռ.։ գ) Բժշկական օգնութեան համար կազմակերպել Անգլիայի Կոմիտէի կողմից եկած բժ. Էյրինջանեանի գլխաւորութեամբ մի բժշկական-առողջապահական խումբ և ուղարկել Խնուս և Մուշ գիւղորայքով։ Բժշկական օգնութիւնը լայն ձևով կազմակերպելու համար դիմել փախստականների գլխաւոր լիազօր գեներալ Թամամշեանին և Քաղաքների Միութեան։

Ապա Կենտր. Կոմիտէն՝ անցնելով միւս հարցերի քննութեան, որոշեց, ի միջի այլոց, գնել երկու վագոն շաքար թէ որբանոցների և թէ փախստականների համար և 4—5 վագոն ալիւր. թէյ արդէն գնած է 5000 ֆ. ֆունտը 1 ռ. 20 կոպէկով։ Կոմիտէի անդամ իշխանուհի Մ. Թումանեանցը ներկայացրեց գրաւոր զեկուցում իր կարգադրութեան տակ գտնուող կազմարարական-տողագործական արհեստանոցի։ Այդ զեկուցումից երևաց, որ գործը շատ յաջող է գնում. օրական աշխատում են 30 հոգուց աւելի փախստականներ, գլխաւորապէս երեխաներ և կանայք և ստանում են օրավարձ 25—70 կ.։

Արհեստանոցի բացման օրից—նոյեմբերի 15-ից 1915 թ. մինչև այս տարուայ մարտի 1-ը ծախք եղել է 4,121 ռ. 19 կ., իսկ մուտք 4,111 ռ. 95 կ.։ Ծախքի մի մասը 2000 ռ. աւելի կազմում են արհեստանոցի մեքենաները։ Կոմիտէի հաշուապահ Վ. Վարդանեանը ներկայացրեց զեկուցում և Երևանի, Էջմիածնի, Վաղարշապատի, Ալէքսանդրապոլի և Ղարաքիլիսայի փախստական երեխաների ապաստարանների անուանացուցակները և հաշիւները։ Կոմիտէն որոշեց ամենակարճ ժամանակում կազմել հաշիւ և ուղարկել Պետրոգրադի կոմիտէին։ Ի նկատի ունենալով, որ կառավարութեան նպաստը Թիֆլիսում գտնուող փախստականների համար ապրիլի 1-ից ընդհատւում է, նրանց պէտք է ուղարկել գաւառները, ուր կարող են ստանալ նպաստ. Կոմիտէն որոշեց առաջարկել իր փախստականական մասնաժողովին՝ ստուգել փախստականների ցուցակը, պարզել թէ ով գործաւոր է և ով անգործ, որպէսզի նպաստի կարօտները միայն ուղարկուեն գաւառները։

***

### ՀԱՅԿ. ԿԵՆՏՐ. ԿՈՄԻՏԷԻ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԲԻՒՐՕՆ

Թիֆլիսում գտնուող և աշխատանքի ընդունակ փախստա-

կաններին համար հիմնուած է Հ. Կ. Կոմիտէին կից «Աշխատանքի Բիւրօ», որի նպատակն է փախստականների համար գործ ճարել։

Բիւրոյի գրասենեակը գտնւում է Պուշկինսկի փողոցում։ Մինչև օրս արձանագրուել են 500 փախստական, որոնցից գործ գտել են 176, մնացածներից մի մասն էլ իրենք են աշխատանք ճարել։

***

## ԹԻՖԼԻՍԻ ՀԱՅԿ. ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹԻՒՆՆԵՐԻ ՀԱՄԱԳՈՐԾԱԿՑՈՒԹԻՒՆԸ ՓԱԽՍՏԱԿԱՆՆԵՐԻ ՕԳՆՈՒԹԵԱՆ ԳՈՐԾՈՒՄ

Կիրակի, մարտի 6-ին, երեկոյեան ժամը 8-ին, Հայոց Գիւղատնտեսական ընկերութեան գրասենեակում տեղի ունեցաւ Թիֆլիսի հայ ընկերութիւնների և հասարակական հաստատութիւնների ներկայացուցիչների երկրորդ ժողովը, որ խորհրդակցելով յիշուած կազմակերպութիւնների մէջ—հայ փախստականգաղթականներին օգնելու գործում—կապ հաստատելու և նրանց գործունէութեան համար որոշ ծրագիր կազմելու հարցի մասին,

Որոշեց՝

Կազմել գաղթականների օգնութեան գործով զբաղուող՝ Թիֆլիսի հայկական հինգ ընկերութիւնների, այսինքն Թիֆլիսի Կենտրոնական կոմիտէտի, Կովկասի Հայոց Բարեգործական ընկերութեան, «Նպաստամատոյց ընկերութեան», Հայաստանի վերաշինութեան Յանձնաժողովի և Հայոց Գիւղատնտեսական ընկերութեան երկ-երկու ներկայացուցիչներից մի համաձայնեցուցիչ մարմին՝ տալով նրան իրաւունք.—

1. Իրազեկ պահել համաձայնութեամբ կապակցուած կազմակերպութիւններին իւրաքանչիւր ընկերութեան արածի և անելիքի մասին։

2. Բաժանել գաղթականների օգնութեան գործում անհրաժեշտ աշխատանքներ համաձայնութեան մէջ մտած հինգ ընկերութիւնների մէջ։

3. Լիազօրել համաձայնեցուցիչ մարմինը ներկայացուցիչ լինել, կարևոր դէպքերում, կառավարութեան և հասարակութեան առաջ յիշած հինգ ընկերութիւնների կողմից։

4. Հոգալ նիւթական միջոցներ գտնելու մասին, հինգ ընկերութիւնների և կազմակերպութիւնների համար, թէ նպաստներ խնդրելով կառավարութիւնից և թէ նուիրատուութիւններ հաւաքելով հասարակութիւնից։

5. Ստանալիք նիւթական միջոցները բաշխել ըստ կարեւոր ընկերութիւնների մէջ և գործադրել նրանց միջոցով։

6. Համաձայնեցուցիչ մարմնի որոշումները պարտաւորեցուցիչ համարել հինգ ընկերութիւններից իւրաքանչիւրի համար։

Հայկական Կենտրոնական Կոմիտէն ընդունեց այս որոշումները և ընտրեց այդ մարմնի համար անդամներ՝ իր պատուաւոր նախագահ Թիֆլիսի առաջնորդ Մեսրոպ եպիսկոպոսին և նախագահ Ս. Յարութիւնեանցին։

Իսկ Կ. Հ. Բ. Ընկ. խորհուրդը նոյն հարցը կը քննի իր առանձին նիստում և կընտրի երկու անդամ։

# Քրօնիկոն

Կ. Հ. Բ. Ընկ. Խորհուրդը որոշել է հրաւիրել ընկերութեան տարեկան ընդհանուր ժողով առաջիկայ ապրիլի 23-ին։ Խորհուրդը նորից առաջարկում է իր այն ճիւղերին, որոնք դեռ նախահաշիւ և տեղեկագիր չեն ներկայացել, շտապեն ներկայացնել իրենց նախահաշիւները և տեղեկագրերը։

***

Կովկասի նախկին Փոխարքայ հանգուցեալ Կոմս Ի. Ի. Վորոնցով-Դաշկովը, ըստ «Рус. Слов.»-ի տեղեկութեան, կտակել է Թիֆլիսի քաղաքային վարչութեան 2 միլիոն ռ. դրամ և Թիֆլիսի ապագայ բարձրագոյն դպրոցին իր պատմական յուշագրերը, որոնք մեծ արժէք պէտք է ունենան և Ռուսաստանի ներքին և արտաքին կեանքից շատ կարևոր հարցեր կը լուսաբանեն։

***

Համառուսական քաղաքների ու զեմստւոյի միութիւնը ուղարկել է Կ. Հ. Բ. Ընկ. Խորհրդին և Հ. Կենտրոնական Կոմիտէն հրաւէր մասնակցելու այս ամսի 17—20 համագումարին, որը կայանալու է Մոսկուայում ու զբաղուելու մի շարք խնդիրներով այն երեխաների մասին, որոնք, շնորհիւ պատերազմի, կարօտ են խնամքի։

Հրաւէրի հետ ուղարկուած է և քննուելիք խնդիրների ցանկը։

Բարեգ. Ընկ. Խորհուրդը և Կենտրոնական Կոմիտէն ժամանակի սղութեան պատճառաւ չկարողացան ներկայացուցիչ ուղարկել, հեռագրով լիազօրեցին պ. Ս. Մամիկոնեանին մասնակցելու այդ խորհրդակցութեան։

***

Հայ փախստականներին օգնող Լոնդոնի Անգլիական Կոմիտէի ուղարկած բժ. Էյինջանեանը հասաւ Թիֆլիս։ Հ. Կ. Կոմիտէն կազմում է բժշկական-սանիտարական խումբ բժ. Էյինջանեանի գլխաւորութեամբ, ուղարկելու Հայաստանի այն շրջանը, ուր աւելի սուր կարիք կայ բժշկական օգնութեան։

***

Թիֆլիսի դատաստանական ամենակարևոր գործերի քննիչ Ժուկովի կարգադրութեամբ պ. Գ. Աղիլխանեանը Մետեխի բանտից, հիւանդութեան պատճառաւ, փոխադրուեց իրա բնակարանը և համարւում է տնային բանտարկութեան ենթարկուած։ Գ. Աղիլխանեանն ունի սրտի հիւանդութիւն, որ ստացել է լուրջ կերպարանք։

***

Անցեալ կիրակի, մարտի 6-ին, կայացաւ Թիֆլիսի վաճառականների ժողով պ. Ս. Գ. Կաֆեանի նախագահութեամբ և զբաղուեց վաճառականների հիմնած լազարէթի հարցով։ Լազարէթը ունեցել է մուտք 60.509 ռ. 8 կ., իսկ ծախս՝ 59,952 ռ. 79 կ. մինչև այս տարուայ յունուարի 1-ը։

Ժողովում պարզուեց, որ լազարէթի պահպանման համար հարկաւոր է այս տարի 50.000 ռ., իսկ վաճառականութիւնը ցպատրաստի դրամ չունի այդ նպատակի համար։ Ժողովը որոշեց ընտրել մի մասնաժողով և յանձնարարել մասնաժողովին հանգանակութիւն անել վաճառականների մէջ։ Մասնաժողովի անդամներ ընտրուեցին Մ. Արամեանց, Խ. Աֆրիկեանց, Ա. Բաղդասարեանց և այլ յայտնի վաճառականներ։

***

Մարտի 8-ին լրացաւ բժ. Գ. Ն. Ստեփանեանի գործունէութեան 25-ամեակը Թիֆլիսի քաղ. վարչ. պաշտօնավարութեան մէջ։ Սկզբում պ. Ստեփանեանը վարել է քաղաքային բժշկի պաշտօն իսկ 1896 թ. սկսած նա վարում է քաղաքային բժշկական սանիտարական տեսչի պաշտօնը։

Բժ. Ստեփանեանի նախաձեռնութեան և նրա անխոնջ և եռանդուն գործունէութեան պէտք է վերագրել Թիֆլիսում բըժշկական-սանիտարական մասի բարգաւաճումն և շատ հիւանդանոցների բացումն։ Նա միաժամանակ ջերմ մասնակցութիւն է ունեցել ու մեր հայկական հասարակական գործերում։ Յոբելեանի պատշաճաւոր կատարումն նշանակուած է այս ամսի 25-ին։

***

Առաջիկայ քառամեակի իրաւասուների ընտրութեան առթիւ Թիֆլիսի քաղաքային դումայի համար սկսուել է ընտրութեան մուտքի տոմսակների բաժանումն և կը շարունակի մինչև 15-ը մարտի, իսկ 20-ին կը կայանայ 1—3 ընտրական քաղաքամասերում ընտրութիւն։ Տոմսակներ

տրւում են Քաղաքային Վարչութեան առաջին բաժանմունքում, Սերգէևսկայա փողոցում:

Արդէն կազմուել են զանազան խմբակցութիւններ և ամեն մէկը բաժանում է ընտրողներին իր թեկնածուների անուանացուցակը: Խմբակցութիւնները ոչ ծրագիր և ոչ էլ ծրագրային խնդիրներ են արծարծում, պրոպագանդան պտտւում է միմիայն որոշ անհատների և նրանց ազգային ծագման շուրջը:

# Արտաքին տեսութիւն

## ԱՆԻՇԽԱՆԱԿԱՆՆԵՐԸ ԵՒ ՊԱՏԵՐԱԶՄԸ

—

Ներկայ համաշխարհային պատերազմը աննախընթաց է ոչ միայն իր տարածութեամբ—կռուին մասնակցող պետութիւնների և անհատների քանակով, այլ և իր խստութեամբ այն անողոք վերիվայրումով, որ նա առաջացրել է հասարակական կեանքի բոլոր ասպարէզներում: Ոչ միայն կռւող, այլ և չէզոք պետութիւնների տնտեսական, քաղաքական և ընդհանուր կուլտուրական կեանքում նա առաջ է բերել այնպիսի խոր փոփոխութիւններ, որոնց մասին եթէ մէկը երկու-երեք տարի առաջ խօսէր, ցնդաբանի համարում կստանար:

Այդ փոփոխութիւններն առանձնապէս զգալի են քաղաքական սկզբունքների շրջանում: Պատերազմը շատ տեղերում իսկական յեղափոխութիւն է առաջացրել թէ ազնուականի, թէ բուրժուայի, թէ աշխատաւորի և թէ դասակարգային կամ արտադասակարգային ինտելիգենտի հասկացողութեանց աշխարհում: Այդ բոլոր դասակարգերի մէջ էլ այսօր վերագնահատութեան են դրուել այնպիսի սկզբունքներ, որոնց ձեռնամերձ լինելը առաջներում կհամարուէր անթոյլատրելի դասակարգային կամ կուսակցական աղանդաւորութիւն:

Ահա այս համատարած վերագնահատութեան ակներև փաստերից մէկի մասին է մեր խօսքը: Միջազգային անիշխանականների ականաւոր ներկայացուցիչները՝ Կրապոտկին, Մալատօ, Ըրչլին և ուրիշները մի կոչ են ուղղել իրենց ընկերներին և համախոհներին, որով նրանք այն միտքն են արտայայտում, թէ ներկայ պատերազմը պէտք է շարունակել մինչև Գերմանիայի պարտութիւնը: Մարդ ուղղակի ուզում է իր աչքերին չհաւատալ: Այն անիշխանականները, որոնք մինչև հիմա կատաղի են եղել ամեն մի պատերազմի, պնդելով թէ չկան յարձակողական և պաշտպանողական պատերազմներ, այլ բոլոր պատերազմներն էլ յարձակողական են. այն անիշխանականները, որոնք պատերազմի դէմ ընդհանուր գործադուլի և այլ ներգործական (ակտիւ) գործողութիւնների հրահանգն են տուել միշտ իրենց հետևորդներին. վերջապէս այն անիշխանականները, որոնք այնքան ատելի պետական կազմակերպութեան նեցուկը համարելով միլիտարիզմը, անվերապահ կռիւ են յայտարարել նրան՝ այդ անիշխանականներն այսօր պատերազմը շարունակել, հետևաբար և միլիտարիզմի ներկայացուցիչների արիւնոտ գործին մասնակցելու քարոզ են կարդում իրենց ընկերներին և նրանց գլխի վրայից՝ ամբողջ աշխարհին...

Այս կոչը հրատարակուած է հակազդելու համար այն խաղաղասիրական ցոյցերին, որ յայտնուել է Գերմանիայում և սկսել է արձագանգ տալ դաշնակից երկրների բանուորական շրջաններում: Կոչի հեղինակների կարծիքով՝ եթէ այս տրամադրութիւնը գործի վերածուի և համաշխարհային պատերազմի ներկայ վիճակում խաղաղութիւն կնքուի՝ այդ մի հսկայական աղէտ կը լինի մարդկութեան և քաղաքակրթութեան համար: Ներկայ պայմաններում հաշտութիւնն ու խաղաղութիւնը ձեռնտու են միայն Գերմանիային՝ որ նախատեսելով իր «զրահապատ բռունցքի» և «չոր վառօդի» քաղաքականութեան վախճանը՝ աշխատում է շուտափոյթ խաղաղութեամբ փրկել իր դրութիւնը: Խօսել այսպիսի հանգամանքներում խաղաղութեան մասին, նշանակում է աշխատել յաւերժացնելու նախայարձակ (ագրեսիւ) քաղաքականութիւնն այն պետութեան, որ 45 տարուց ի վեր պահում է Եւրոպան զինուորական բանակի վիճակում: «Մեր խորին համոզմունքով, ասում են կոչի հեղինակները, Գերմանիայի նախայարձակ ձգտումները սպառնում են ոչ միայն մեր յոյսերին մարդկութիւնն ազատագրելու, այլ և համաշխարհային ընաշրջման՝ (էւոլիւցիայի) ընթացքին: Այդ պատճառով էլ մենք, հակամիլիտարիստ անիշխանականներս, որ թշնամի ենք պատերազմին և կողմնակից խաղաղութեան և ազգերի եղբայրութեան, արտայայտւում ենք յօգուտ պատերազմի և մեր վիճակը չենք զատում Գերմանիայի դէմ կռւող ժողովրդների վիճակից»:

Այս կոչը մի անգամ ևս գալիս է ասելու, որ ներկայ համաշխարհային պատերազմն այն պատերազմներից չէ, որ աչքի առաջ են ունեցել հակամիլիտարիստական և հակապատերազմական քարոզի հեղինակները—լինին նրանք անիշխանական թէ ընկերվարական բանակից: Ներկայ պատերազմը ազատագրական է և քաղաքակրթական: Ինչքան էլ մեծ լինին նրա բերած աւերը և թափած զոհերի թիւը, ինչքան էլ ցանցառ հասկացողութիւն ունենան այս կամ այն ռազմաճակատում կռուող զինուորները իրենց կատարած գործի մասին՝ այս պատերազմը պէտք է հարթէ ազգերի և անհատների ազատագրութեան ճանապարհը և արագ տեմպով առաջնորդի մարդկութիւնը դէպի խաղաղութեան նաւահանգիստը—մի պայմանով սակայն, որ դաշնակիցները յաղթող դուրս գան կռուից: Այս գիտակցութիւնն է խօսում վերոյիշեալ անիշխանականների մէջ, այս գիտակցութեամբ է տոգորուած այսօր ֆրանսական և անգլիական բանուորութիւնը և այս գիտակցութիւնը պէտք է վերջ ի վերջոյ լուսաւորի մեր այն ընկերվարականներին, որոնք ներկայ համաշխարհային պատերազմի հանդէպ էլ չեն կարողանում դուրս գալ իրենց աւանդական հասկացողութիւնների շրջանակից:

Ա. Ջամալեան

# ՏԱՃԿԱՀԱՅԵՐ

## ԲՈՒԼԱՆԸԽԻ ԿՈՏՈՐԱԾՆԵՐԸ

I

Տուրուբերանի Հարք գաւառը թիւրք տիրապետութեան անյիշատակ ժամանակներից սկսած՝ կոչուած է Բուլանըխ,*) որ այժմ կը բաժնուի երկու գաւառամասերու—Վերին Բուլանըխ և Ներքին Բուլանըխ: Երկուքը միասին կըկազմեն քաղաքային բաժանումով մէկ գազա (գաւառակ) և մի նահիէ (գիւղախումբ):

Գաւառակի կենտրոնն է Կոփ (Վերին Բուլանըխ) և քաղաքային պատասխանատու գլխաւոր պաշտօնեան է գայմագամը. Նահիէի կեդրոնն է Լիզ (Ներքին Բուլանըխ) և գլխաւոր պաշտօնեան՝ Միւտիրը: Երկուքը միասին ենթարկուած են Մշու սանճագին. իսկ սա՝ Բաղէշի կամ Բիթլիսի կուսակալութեան:

Վերին Բուլանըխի սահմաններն են. արևելքէն և հիւսիսէն՝ Մանազկերտ գաւառը, արևմուտքէն Ձեռնակայ լեռնաշղթան և Խամուր բերդի սարը, հարաւէն՝ Ախլաթ-Բղնունիք գաւառը:

Ներքին Բուլանըխայ հիւսիսը կընկնայ Խոյլի-Բաբա կոչուած սարն ու լեռնաշղթան. արևմուտքէն՝ Ջանէր ու Խանդրէզ գաւառակները, հարաւէն՝ Տարօն՝ անջրպետ ունենալով Քօսուրայ գաւառն ու լեռնաշղթան:

*) Բուլանըխ անունն անշուշտ ծագել է հին Տուրուբերան նահանգի Պուլանիք նախարարութեան և գաւառակից (Ստ. Կանայեանց, Անյայտ գաւառներ հին Հայաստանի, էջ 145, Էջմիածին 1914), որ Ղ. Ինճիճեանը կոչում է «մասնաւոր վիճակ» (Ստորագր. հին Հայաստանի, էջ 212), ուստի և չէ կարող լինել այժմեան Մալաշքուրթը, ինչպէս ենթադրում է (Տ. Թամասեան, «Մշակ» 1916, թիւ 24). Ծանօթ. Խմբագր.

*Այս գունդերը ղրկուեցան Կարին։ Սարիղամիշի օսմանեան զօրաց պարտութեամբը մաս մը բնաջինջ եղաւ, իսկ միւս մասը փախուստ տուաւ իր երկիրը։ Ասոնց դասալիք զինուորներէն մի քանիսը Խնուս-բերդի մէջ հրացանի բռնուեցան։*

*Թ է ք ա լ ի ֆ ի  հ ա ր պ ի յ է ն աւելի մեծ թափով առաջ կը տարուէր. ժողովրդի ձեռքէն ամեն տեսակ կենսամթերք և ապրանք յափշտակելէ յետոյ, սկսեցին ձեռնարկել փոխադրութեան դժուարին գործին։ Փոխադրութիւնը տեղի կունենար երկու ուղղութեամբ. մէկը դէպի հիւսիս՝ Անթափի ասպարեզը—Խլիճգեդուկ. միւսը՝ Խնուս-Էրզերումի կողմերը։ Բացի ցորեն և ալիւր փոխադրելէ, քանի՜ քանի անգամ խեղճուկ գիւղացիներուն հաց եփել կուտային և կուզարկէին Մանազկերտ, Անթափ և այլն։*

*Փոխադրութիւնը կը կատարուէր սայլերով ցորչափ օդն ու եղանակը կը ներէին. բայց երբ եկաւ Տաճկաստանի սարսափելի ձմեռը, ճամբաները գոցուեցան արշինաչափ ձիւնով, անասուններու տեղ գործածուեցան մարդիկ, կիներ և, ո՜հ Աստուած իմ, մինչև իսկ 14 տարեկան երեխաներ։*

*Իւրաքանչիւր մարդ պարտաւոր էր 1—2 փութ ալիւր կամ ցորեն շալակել, վերցնել նաև 6—7 օրուայ պաշար և փոխադրել Բուլանըխէն Խնուս, Թէքման և մինչև Բասեն—Բէօյիւքքէօյ։ Սոսկալի և աղեխարշ էր տեսարանը, չէր կարելի առանց արտասուքի նայել անասունի դեր կատարելու պարտաւորուած՝ մարդկային կերպարանքէ զուրկ, թշուառ արարածներու կարաւաններուն—այր, ծեր, տղայ և կին, որոնք սրտաբեկ, յուսահատ, կորագլուխ, բեռան տակ ճնշուած, մերկ ու բոբիկ օրերով լեռներ, կիրճեր ու գետակներ կը կտրէին կանցնէին ու մեծ մասը բուք ու ցուրտէն տեղն ու տեղ փայտանալով կը մեռնէին։*

*Այստեղ մի ծերուկ, այնտեղ մի քաղցեալ կորիչ, ձեռքը ծնօտին, բեռը կռնակին՝ քարացած։ Մի տեղ ընկղմուած անասուն՝ ոտքը կոտրած ու տեղն ու տեղը կեցած. միւս տեղ՝ Արաքսի սեպաձև կիրճերէն ու զառիթափներէն բեռներով, սայլերով միասին գլտորած՝ ու ջրի սառոյցին մէջ արձանացած, կեցան հարիւրաւոր եզներ, էշեր, ձիեր և ջորիներ։*

*1914—1915-ի ձմեռը Բուլանըխ դարձած էր մի քաոս և մանաւորապէս Կոփը՝ կատարեալ դժոխք։ Գրեթէ ամեն օր ժանդարմներու, զօրքերու, քրդական կամաւոր գնդերու, Վանէն, Ախլաթէն և Ալճաւազէն փոխադրուող ոչխարներու և պաշարաբարձ մարդոց կարաւաններու երթևեկութենէն ճամբաները ծածկուած էին արշինաչափ ցեխով. որով քալելը գրեթէ անհնարին էր դարձեր։ Եւ այս ամենը, մարդ թէ անասուն, պարտաւոր էին խեղճ հայերը ձրիաբար տեղաւորել և կերակրել։ Սպառեցաւ հայ գեղացու կենսամթերքը. ժողովրդի թշուառութիւնը կուգար լրացնելու ներկայութիւնը Արար զօրքերու՝ որոնց անսովոր նիստ ու կացը, աղտեղութիւնը, խառնակերութիւնը յառաջացուցին բծաւոր տիֆ հիւանդութիւնը, որ մեծ զոհեր տարաւ թէ իրենցմէ և թէ ժողովրդէն։*

*Մեծ Ղարաքիլիսա* — *Սահակ Մովսիսեան*

*(Կը շարունակուի)*

## ՊԱՐՍԿԱՍՏԱՆԻ ՓԱԽՍՏԱԿԱՆ ՀԱՅԵՐԻ ԵՒ ԱՍՈՐԻՆԵՐԻ ԾԱՆՐ ԿԱՑՈՒԹԻՒՆԸ

*Ռուս-տաճկական պատերազմի արհաւիրքներից զերծ չմնացին և Ատրպատականի, մանաւանդ Խոյի, Սալմաստի, Ուրմիայի հայերը և ասորիները։*

*Անցեալ դեկտեմբերին ընդհանուր նահանջի ժամանակ յիշեալ վայրերի քրիստոնեայ տարրն ևս ստիպուած էր փախչել Կովկասի սահմանները, տալով բաւականաչափ մարդկային զոհեր և քայքայուելով տնտեսապէս։*

*Քրդական և տաճկական բաշի-բուզուկները ոտք կոխելով այդ վայրերը, աւերեցին քրիստոնեաների ստացուածքը և յագեցրին իրենց գազանային ախորժակը, սոսկալի տանջանքների ենթարկելով և սրի քաշելով պատահած քրիստոնեային։*

*Ականատես աչքի առաջ միշտ պատկերանալու են ցրտից սառած երեխաներ, բաց երկնքի տակ, ձեան վրայ պատահած ծննդաբերութիւններ, սովամահ և մերկ դիակներ և նոյնանման բազմաթիւ սրտաճմլիկ տեսարաններ։*

*Այդ տանջուած, աւերուած ժողովուրդը մինչև անցեալ ամառ, մօտ 7 ամիս ստիպուած էր պատսպարուել Կովկասի գիւղերում և պահպանել իր գոյութիւնը մեծ մասամբ շնորհիւ կովկասահայ գիւղացութեան եղբայրական աջակցութեան։*

*Ամառը, երբ թշնամին ջարդուեց և ռուսական բանակը յառաջ անցաւ, ժողովուրդը ևս սկսեց վերադառնալ իր ծննդավայրը։*

*Բայց աւա՜ղ, նա տեսաւ շինութիւնները կիսաքանդ, առանց դռների և պատուհանների, հացահատիկների պաշարը դատարկ, տան կահ-կարասիքը անհետացած։*

*Բացի վերադարձած տեղացի փախստականներից, ներկայումս այդ վայրերը պատսպարել են տաճկահայ 10,000 և մօտ 25000 ասորի փախստական։*

*Տաճկաստանից եկածներն ստանում են իրենց հասանելիք նպաստը։ Բժշկական օգնութիւն ցոյց է տրւում անխտիր Քաղաքների Միութեան, Բաքուի կուլտուրական և Տատեանայի յանձնաժողովների կողմից։ Փախստականների վիճակը տնօրինող գըլխաւոր լիազօր Թամամշեանի կարգադրութեամբ տեղացիներին նպաստ չի տրւում, չնայած որ նոքա փախել, կողոպտուել են և կորցրել են իրենց ինչքն ու ստացուածքը, տալով ոչ նուազ զոհեր և շատ ժամանակ չէ, որ վերադարձել են իրենց քարուքանդ եղած ծննդավայրը։ Պարսկահայ վերադարձած փախստականները ներկայումս գտնւում են չափազանց թշուառ վիճակում ու զ ր կ ու ա ծ  ե ն  ն պ ա ս տ ի ց։ Այդ կողմերի ցանքսերի 2/3-ը լինելով աշնանային, հնար չեն ունեցել ցանելու, որովհետև վերադարձել են ուշ. գալիք գարնանացանքսի մէջ էլ զգացւում է սերմացուի ու լծկանների մեծ պակասութիւն. քարուքանդ են եղած նմանապէս և այգիները և սովի ուրուականը իւր սոսկալի հետևանքներով ծառանում է այդ թշուառների առաջ։*

*Քանի ուշ չէ, պէտք է մտածել թշուառներին օգնելու, նոցա ևս պէտք է տալ նպաստ ինչպէս փախստականների, քանի որ նոքա պատերազմի պատճառով երկու անգամ քարուքանդ են եղել. նոցա պէտք է հնարաւորութիւն տալ գոնէ գարնանացանքս անելու։*

*Դասել պարսկահայերին պատերազմից վնասուածների շարքը և այդպիսով զրկել նոցա հասանելիք նպաստից, ա յ դ  ա ղ ա ղ ա կ ո ղ  ա ն ա ր դ ա ր ու թ ի ւ ն  է։ Եթէ այդ բոլորի վրայ աւելացնենք ռուսական ռուբլու արժէքը Պարսկաստանում (54—56 կոպ.) և կենսական մթերքների թանգութիւնը, այն ժամանակ թշուառութեան պատկերը ամբողջացած կը լինի միայն մօտաւորապէս, բայց ամբողջապէս։*

*Գլխաւոր լիազօր պ. գեներալ Թամամշեանի ուշադրութիւնն ենք հրաւիրում այդ աչք ծակող փաստի վրայ։ Յուսով ենք ամենակարճ ժամանակամիջոցում թիւրիմացութիւնը կը պարզուի և նախ երկու անգամ տեղահան և քարուքանդ եղած Խոյի, Սալմաստի, Ուրմիայի հայերը կստանան իրենց հասանելիք փախստականական նպաստը և կ՚ կարողանան մի կերպ իրենց գոյութիւնը պահպանել, մինչև հնարաւորութիւն կունենան իրենց աշխատանքի արդիւնքը վայելելու և ապա աչքի առաջ ունենալով ռուսական դրամի արժէքը Պարսկաստանում, փախստականներին նըպաստ կը տրուին ըստ թղթադրամի այժմեան արժէքի։*

*Ժողովուրդը սոված է. շտապելու է։*

*Ա. Շարաֆեանց*

# Գեղարուեստ

* * *

*Վշտի ճաշակում տանջանքի աւեր,*
*Երազ ու պատրանք, կորուստ ու ցաւեր,*
*Մանուկ օրերից արտասուք ու թոյն,*
*Այս ինձ վիճակեց բախտն անագորոյն։*
*Ու կեանքը դարձաւ*
*Մի մութ քարանձաւ.*
*Ես՝ այնտեղ մոլոր*
*Հէգ կալանաւոր։*

*Բայց ահա մի շող՝ դողդոջ ու աղօտ,*
*Բերում է սրտիս երազ առաւօտ.*
*Ու ես ճաշակած անսովոր մի խինդ՝*
*Ուզում եմ փշրել շղթաս ամբարտաւան.*
*Աստղերին փարել*
*Ու սիրտս վառել,*
*Ջահի պէս բռնած*
*Սուրբ դէպի ցած...*

*Յարութիւն Պետրոսեան*

# Գիտական

## ՀԵՏԱԲՐԲՐԱԿԱՆ ԶԵԿՈՅՑՈՒՄՆԵՐ

*Անցեալ փետրուարի 25-ին Կովկասի Բժշկական ընկերութեան նիստում տեղի ունեցան հետեւեալ զեկուցումները. բժ. Մարտինովսկին, որ նոր էր վերադարձել Էրզրումից՝ հաղորդեց հետեւեալը։ Այժմ շնորհիւ բժշկութեան և առողջապահութեան յառաջադիմութեան՝ պատերազմի ժամանակ հիւանդութիւններից և վէրքերից առաջուայ նման վնասներ չեն լինում։ Ղրիմի պատերազմի ժամանակ ռուսների զօրքում մահացութիւնը համաճարակներից 20 անգամ աւելի էր, քան վէրքերից, իսկ դաշնակիցներինը 4 անգամ աւելի։ Սպանա-ամերիկեան պատերազմում 180,000 զինուորից միայն ռոմվայնատիֆով մեռան 20,000 հոգի։ Եւ այժմեան պատերազմում ֆրանսական ճակատում 400,000 վիրաւորներից մահացութեան տոկոսը հասնում է $2^{1}/_{2}{}^{0}/_{0}$, իսկ ապաքինած և բանակ վերադարձածների թիւը հասնում է $60^{0}/_{0}$։ Ներկայ պատերազմի ժամանակ եղան համաճարակներ գլխաւորապէս ստամոքս-աղիքային բնոյթով, որը բացատրւում է վատ սննդի և ջրի պատճառով և տարածւում են բացառապէս մարդու արիւնով սնուող միջատների միջոցով։*

*Խիւր համաճարակի (էպիդեմիայի) դէմ շատ դժուար է, մանաւանդ բերդերում, ինչպէս այդ տեղի է ունեցել Կարնում (Էրզրումում)։ Անցեալ տարի բծաւոր տիֆը այդ քաղաքում սարսափելի չափերի է հասել. մահուան դէպքեր օրական եղել են 600—700։ Ընդհանրապէս Կարնում բծաւոր տիֆով հիւանդացել են 150,000 հոգի։ Տաճիկների մօտ ջրարաշխումը վատ է. օրինակ Կարնում թէև շատ են աղբիւրներ (фонтанъ), բայց միայն 5-ի ջուրը ադտոտուած չի։ Բժ. Մարտինովսկին, կողմնակից մակարուծական (պարազիտային) տեսութեան, պատմում է, որ միջատային տեսութիւնը, մանաւանդ հագստի ոջիլները աւելի քան արդարանում է՝ տալով անհերքելի փաստեր։ Օրինակ նրա հիմնած դարմանատներում (կուրսերում) 100 գթութեան քոյրերից բծաւոր տիֆի հիւանդանոցում ոչ ոք չի հիւանդացել։ Մինչև անգամ տաճիկները ընդունում են միջատային տեսութիւնը։ Կարնի պատերին կպցրած յայտարարութիւնների վրայ նկարուած է ոջիլն իբրև պատճառ բծաւոր տիֆի։*

*Խոլերայի, տիֆի և այլն պատուաստը Կովկասի ճակատում տուել է փառաւոր հետեւանքներ։*

*Նոյն ընկերութեան մէջ զեկուցուեց մի շատ հազուագիւտ բժշկական դէպքի մասին։ Բժ. Կիմոնը ցոյց տուեց մէկ 3 տարեկան երեխայ, որը գնդասեղ էր կուլ տուել։ Տղան ութերորդ օրը մտել էր Միքայէլեան հիւանդանոցը, ուր Ռէնտգէնի գործիքի (ապարատի) միջոցով նկատել էր քորոցի տեղը աղիքներում։ Գնդասեղը կամաց-կամաց անցնելով աղիքներով երրորդ օրը դուրս էր եկել կղկղանքի հետ, չպատճառելով ոչ մի վնաս, շնորհիւ այն հանգամանքի, որ գնդասեղը ընկել էր ոչ թէ սուր, այլ բութ ծայրի վրայ։*

*Բժ. Բ. Աղասարեան*

# Մամուլ

*Ամեն մի ժողովրդի կեանքում լինում են վայրկեաններ, երբ ներքին տարաձայնութիւններն առ ժամանակ դադարելու են գոյութիւն ունենալուց, որպէս զի այդ ժողովուրդն իբրև միաձոյլ կամք դուրս գայ արտաքին աշխարհի առաջ։*

*Ներկայ համաշխարհային պատերազմի ընթացքում համայնօրէն արտայայտուելու կարիքն առանձին չեշտով հանդէս եկաւ վտանգուած ժողովուրդների կեանքում։*

*Մեզ պէս փոքր ու ճնշուած ազգերի համար առանձնապէս կարևոր է դառնում այդ ներքին համերաշխութիւնը։ Այժմ մանաւանդ դադարելու են ներքին պայքարների այն ձևերը, որոնք հասկանալի են միայն խաղաղ ժամանակներում։*

*Վերջերս մեր մամուլի մէջ ներքին համերաշխութիւն ստեղծելու կարիքը քննւում է ուժեղ թափով։ Նուպար փաշայի մի քանի հասարակական գործիչների գրած նամակները ներքին խաղաղութեան խնդրին առանձին կարևորութիւն տուին։*

*«Համբաւաբեր»ը հէնց իր առաջին համարի առաջնորդողում ընդհանուր տեսակէտից մօտեցաւ համերաշխ գործունէութեան հարցին ասելով. «Քանի որ մեր ժողովրդի ազգային գոյութեան հարցն է այս րոպէին դրուած, պէտք է որ ազգի բոլոր մասնիկները միացնեն իրենց եռանդն ու կարողութիւնը՝ մի միաբանութիւն ստեղծելու համար»։ Նախավերջին համարի առաջնորդողը՝ գրուած Նուպար փաշայի նամակի առթիւ, նոյն հարցին է նուիրուած։*

*Այդ խնդիրը «Հորիզոնում» արծարծեցին Զօպանեան, Զալխուշեան, Վարանդեան։ Վերջինս ճիշտ կերպով մատնացոյց է անում, որ անհամերաշխութիւնը աւելի տարածուած է հայկական արտասահմանի գաղութներում, քան կովկասահայերի մէջ։ Ճիշդ է նաև այն, որ մեր արտասահմանեան ականաւոր գործիչները կովկասահայերի ներքին տարաձայնութիւնների մասին արհեստականօրէն ուռեցրած լուրերի միջոցով են կարծիք կազմել։*

*«Մշակը» Նուպար փաշայի նամակի առիթով գրած առաջնորդողի մէջ յայտնում է. «Անշուշտ մենք մեր բոլոր աշխատանքը, ջանքերը գործ կը դնենք իրագործելու, գլուխ բերելու մեր ականաւոր հայ քաղաքական գործչի առաջարկը»։*

*«Արև»-ը ես մի քանի յօդուածներ նուիրեց այդ հարցին։ №49-ի առաջնորդողում համերաշխութեան գլխաւոր պայմանն է համարում արդար ու մեղաւոր գանելու որոնումների դադարեցումը. «քանի որ դրանով կրքերը նորից կը պայթեն և ընդհանուր գործը նորից կը վտանգուի»։*

*Ներկայ անհամերաշխութիւնը ոչ միայն քայքայում է մեր ներքին կեանքի բնականոն ընթացքը, այլ և մեզ վարկաբեկ է անում մեր օտարազգի բարեկամների առաջ։*

*Ահա թէ այս մասին ինչ է գրում Նուպար-փաշան. «Ես ի-*

րօք շատ մտահոգ եմ, տեսնելով այն յոռի տպաւորութիւնը, որ գործում են օտար երկրներում՝ Անգլիայում, Ֆրանսիայում, Շուէյցարիայում, Ամերիկայում այն երկպառակութիւնները, որոնք գլուխ են բարձրացրել Կովկասի հայերի մէջ։ Եւ ստացայ այս վերջին ժամանակները մեր օտարազգի բարեկամներից և հայկական դատը պաշտպանող ամենաանձնուէր անձերից տխրալի ցաւակցութիւններ այդ առիթով»։ («Մշակ»)

Դեռ ոչինչ, եթէ բանը ցաւակցութեամբ վերջանար, չարիքն աւելի խոր է քան կարելի է ըստ երևոյթին ենթադրել։ Այս գրութեան հետևանքները շատ ծանր են լինելու, որովհետև, ինչպէս գրում է Նուպար-փաշան, «մենք կարող ենք կորցնել այն համակրութիւնները, որ մեր բարեկամներից ձեռք ենք բերել.... Նոյն իսկ մեր ապագան կարող է դրանից վտանգուել և մենք կարող էինք կորցնել պտուղները մեր այն ջանքերի, որ գործադրել ենք ձեռք բերելով թանկագին պաշտպանութիւններ, որոնք միայն կարող են առաջնորդել մեզ մեր տենչանքների իրագործման ապագայում»։

Խմբագիր՝ ՍԱՄՍՈՆ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆՑ

Հրատարակիչ Կ. Հ. Բ. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ

# Յայտարարութիւններ



Перечень статей, напечатанныхъ въ издаваемомъ Кавказскимъ Обществомъ содѣйствія развитію лечебныхъ мѣстъ журналѣ „**Цѣлебный Кавказъ**“ за 1915 годъ.

1. Арамянцъ С.—Анализъ воды источника на берегу Гокчи(-нскаго озера.
2. Бабэ В. А.—Цхалтубскіе теплые источники.
3. Браиловскій М. М.—Обзоръ мѣропріятій Общества по изслѣдованію Ахтальскихъ грязей.
4. Веселовзоровъ М. Н. Будущее Ахталы.
5. Гласекъ С. В.—Климатическія изслѣдованія мѣстности Ахталы.
6. Глотовъ Я. А.—Отъ Анапы до Батума.
7. „ —По лечебнымъ мѣстамъ и водамъ Тифл. губ.
8. Гурко А. Г.—Бальнеологическое примѣненіе Ахтальскихъ грязей.
9. Деканозова Е. С.—Леченіе гинекологическихъ больныхъ Ахтальской грязью.
10. Зеннингъ А. И.—Химическое изслѣдованіе пробы Ахтальской грязи.
11. Конюшевскій Л. К.—Діадинскіе щелочно-сѣрнистые источники
12. „ —Краткій обзоръ минеральныхъ источниковъ Кавказа и ихъ сравнительное значеніе по литературнымъ даннымъ.
13. „ —Опыты опредѣленія количества Ахтальскихъ грязей.
14. Купцисъ И. Д. О. химическомъ составѣ и радіоактивности сѣрнистыхъ водъ Горячеводска и Псекупска.
15. Меликсетъ-Бековъ Л. М.—Ахтальскія грязи, какъ бальнеологическій пунктъ.
16. Народинъ К.—На группахъ Кавказскихъ минеральныхъ водъ.
17. Пожарскій А. В.—Замѣтки къ плану Ахтальскихъ грязей.
18. Семеновъ Ю. Ф.—Экскурсія Совѣта Общества къ Ахтальскимъ грязямъ.
19. Смирновъ Г. М.—Раіонъ минеральныхъ источниковъ селеній Делижанъ и Никитино.
20. Фехнеръ Ф. Л.—Списокъ лечебныхъ мѣстъ (минеральныхъ водъ, грязей, морскихъ купаній и климатическихъ станій) Кавказа.
21. Чурсинъ Г. Ф. Лечебныя мѣста и минеральныя источники раіона Делижанъ-оз. Гокча.
22. Щимановскій С.—Новые самопишущіе приборы для изслѣдованія жизни минеральныхъ источниковъ. 2—1

Տպարան «ՊՐՕԳՐԷՍ», Լ. Մ. Պօղոսեանի Типографія „Прогрессъ“, Лорисъ-Меликовск. 1 Дозволено военнойценз